Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Հ Կ (բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 11 (113)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ—1941

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԶՐՈՒՅՑԸ ԲԱՄԲԱԿԱԳՈՐԾԱԿԱՆ ԿՈԼԽՈԶՆԵՐՈՒՄ

*Մինչև սովետական կարգերի հաստատումը, Հայաստանում բամբակ մշակվում էր մի քանի շրջաններում, փոքր տարածության վրա։ Անհատորեն, գյուղատնտեսական ցածր տեխնիկայով— նահապետական միջոցներով հողը մշակելու հետևանքով, բամբակագործ գյուղացիները ցածր բերք էին ստանում։*

*Այժմ բամբակը մեր ռեսպուբլիկայում մշակվող հիմնական տեխնիկական կուլտուրաներից է։ Կոմունիստական պարտիայի և սովետական իշխանության՝ կոլխոզների և կոլխոզնիկների նկատմամբ ունեցած մշտական հոգատարության շնորհիվ, Հայաստանում, ինչպես գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների, այնպես էլ բամբա-*

կի մշակության զարգացման, բերքատվության բարձրացման ու որակի լավացման համար ստեղծված են բոլոր հնարավորությունները։

ՍՍՌ Միության Ժողկոմսովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի՝ «Հայկական ՍՍՌ-ում պտղաբուծությունն ու խաղողագործությունը և տեխնիկական կուլտուրաները զարգացնելու ձեռնարկումների մասին» 1940 թ. սեպտեմբերի 6-ի որոշումն ավելի լայն հնարավորություններ ստեղծեց մեր ռեսպուբլիկայում բամբակի մշակությունը ծավալելու և բերքատվությունը բարձրացնելու համար։ Համաձայն այդ որոշման, այս տարի մշակվում է 17.100 հեկտար բամբակ, իսկ 1944 թվին այդ տարածությունը հասնելու է մինչև 22.000 հեկտարի։

Ցանքսի տարածության ավելացման հետ մեկտեղ, պետք է բարձրացնել բամբակի բերքատվությունն ու որակը, իրականացնելով ընկեր Ստալինի 18-րդ համագումարում ասած խոսքերն այն մասին, որ պետք է «Շարունակել ծավալել մեր հողագործության ու անասնապահության վերելքն այն հաշվով, որ մոտակա 3—4 տարիների ընթացքում հասնենք տարեկան 8 միլիարդ փութ հացահատիկի արտադրության, հեկտարից



12—13 ցենտներ միջին բերքատվությամբ, տեխնիկական կուլտուրաների գծով արտադրությունն ավելացնել միջին հաշվով 30—35 տոկոսով...»։ Ընկեր Ստալինի խոսքերն իրականացնելու, 18-րդ համագումարի որոշումների կատարման համար, բավական չէ միայն բամբակի ցանքսն ավելացնել, մեզ անհրաժեշտ է լայն կերպով պայքարել՝ ցանած ամեն մի հեկտարից բարձր և լավ որակի բերք ստանալու ուղղությամբ։ Բերքատվության բարձրացման համար պետք է պայքարի յուրաքանչյուր բրիգադա, յուրաքանչյուր կոլխոզնիկ. ամենից առաջ՝ ագրոտեխնիկայի բոլոր կանոնները ժամանակին և ճիշտ կիրառելով։ Այսօր մեր զրույցը կնվիրենք բամբակի ցանքերի մշակման ագրոտեխնիկային, որպեսզի ուսումնասիրենք այն և ստուգենք թե կիրառո՞ւմ է արդյոք մեր բրիգադան պահանջված ագրոկանոնները։

Բամբակի բարձր բերք ստանալու համար ցանքսը ժամանակին և որակով կատարելը բավական չէ, անհրաժեշտ է ցանքսի հետագա խնամքը նույնպես ժամանակին և որակով կատարել։ Լավ որակով և ժամանակին կատարված կուլտիվացիան և քաղհանը բամբակի բերքատվության բարձ-

րացման հիմնական և անհրաժեշտ պայմաններից են։

Բոլոր դաշտերում բույսի վեգետացիայի շրջանում պետք է կատարել ոչ պակաս 6—7 կուլտիվացիա և նույնքան էլ քաղհան։

Կուլտիվացիան և քաղհանը կատարել հողի քեշին, հասունացած ժամանակ, երբեք չթողնել, որ հողը չորանա (քեշն անցնի)։

Քաղհանը պետք է կատարել 12—14 սանտիմետր խորությամբ, տրակտորային կուլտիվացիան կատարել 14—16 սմ., իսկ ձիու կուլտիվացիան 10—12 սմ. խորությամբ։ Քաղհանի ժամանակ թմբերի վրայի հողը, որտեղ կուտակված են սննդանյութերը, պետք է փոխադրել ակոսների մեջ, իսկ ակոսների միջի հողը բարձրացնել թմբերի վրա։ Կուլտիվացիան և քաղհանն առաջին հերթին պետք է սկսել մոլախոտերով վարակված և այն հողամասերում, որոնց ստորերկրյա ջրերը մոտ են գտնվում։ Կուլտիվացիայի և քաղհանի ժամանակ անհրաժեշտ է հավաքել մոլախոտերը և նրանց արմատները, դուրս հանել դրանք դաշտից և այրել։ Այս միջոցը կանխում է մոլախոտերի հետագա զարգացումը։

Բամբակի ծիլերը կոշտոտումից և ոչնչանալուց պաշտպանելու համար առաջին



կուլտիվացիան կատարելիս, մշակվող շերտի լայնությունը պետք է լինի 40 սմ., այսինքն՝ 15—20 սմ. պաշտպանիչ զոնա պետք է թողնել, երկրորդ կուլտիվացիայից սկսած մինչև թփերի փարթամանալը, կուլտիվատորի մշակող շերտի լայնությունը պետք է մեծացնել մինչև 40—50 սմ.։

Կուլտիվատորի ճիշտ աշխատանքն ապահովելու և բույսերը վնասվելուց ու հողով ծածկվելուց պահպանելու համար, տրակտորային կուլտիվատորը պետք է անպայման անցնի այն շարքերով, որտեղից անցել է տրակտորային շարքացանը։ Դաշտը մշակելու հետ միաժամանակ պետք է անպայման քաղհանել հողամասի շրջապատում գտնվող մոլախոտերը։ Այս միջոցառումը բավականին կօգնի մոլախոտերի զարգացման և տարածման դեմ կազմակերպված պայքարին։

ՍՍՌ Միության Ժողկոմսովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի 1940 թ. սեպտեմբերի 6-ի պատմական որոշումը մեր առաջ խնդիր է դնում առաջիկա 2—3 տարում բամբակագործության կոմպլեքսային մեքենայացման հասցնել առավելագույն չափերի, ընդորում բամբակի ցանքերի ընդհանուր տարածության մինչև 50 տոկոսի

վրա կիրառել խաչաձև մշակությունը։ Բամբակի դաշտերի խաչաձև մշակության էությունը կայանում է նրանում, որ կուլտիվացիան կատարվում է երկու ուղղությամբ. մեկը դաշտի երկարությամբ, մյուսը՝ դաշտի լայնությամբ։

Երկկողմանի կուլտիվացիայի միջոցով բամբակի ցանքերի ամառային խնամքի աշխատանքներն ամենամեծ չափով մեքենայացման են ենթարկվում, որի շնորհիվ տնտեսվում է զգալի չափով բանվորական ուժ, որը չափազանց կարևոր է մեր բամբակացան կոլխոզների համար, ագրոձեռնարկումները կատարվում են ճիշտ ժամկետներին և բարձր որակով։ Այս առավելությունների շնորհիվ բամբակի բույսերի զարգացման համար ստեղծվում են շատ ավելի լավ պայմաններ և ստացվում է ավելի բարձր բերք։

Ի՞նչ առավելություններ ունի բամբակի դաշտի խաչաձև մշակությունը.

ա) Խաչաձև կուլտիվացիայի միջոցով դաշտի մոտ 80 տոկոսը մշակվում է մեքենաներով, իսկ սովորական ձևով մշակելիս, մեքենաներով մշակվում է միայն 55—60 տոկոսը։

բ) Խաչաձև մշակության ժամանակ



ցանքերի միջբնային տարածությունից բույսերը հեռացվում են կուլտիվատորներով, որն զգալի չափով բարձրացնում է աշխատանքի արտադրողականությունը և որակը։

գ) Այս ձևով ավելի հեշտ է հաջողվում ոչնչացնել մոլախոտերը։

դ) Երկկողմանի կուլտիվացիայի ժամանակ դաշտի որոշ մասը մշակվում է կրկնակի, որի շնորհիվ հողը լավ է խառնվում և սննդանյութերը բույսերի կողմից ավելի լավ են օգտագործվում։

Երբ սկսվում է բամբակի սերմերի մասսայական ծլումը, պետք է անմիջապես սկսել առաջին խաչաձև կուլտիվացիան, որն ավարտելուց անմիջապես հետո կամ հենց կատարման ժամանակ, կուլտիվատորի հետքով պետք է սկսել քաղհանը և նոսրացման աշխատանքները բների մեջ։

Խաչաձև մշակվող դաշտերում առանձնապես մեծ ուշադրություն պետք է դարձնել բույսերի քանակի վրա։ Սովորաբար այս ձևով մշակվող դաշտերում հեկտարի վրա ավելի քիչ բույս է մնում, քան սովորաբար, այսինքն միայն մի ուղղությամբ կուլտիվացիա կատարելով դաշտերում։ Այս հանգամանքը բերքի քանակի վրա բացա-

սաբար չի անդրադառնում, որովհետև երկկողմանի մշակության շնորհիվ, բույսերն ավելի լավ են զարգանում և հետևաբար ավելի բարձր բերք են տալիս, սակայն եթե անուշադրության հետևանքով մեկ հեկտարի վրա նախատեսված բույսերի թիվը պակաս լինի, այդ դեպքում անկասկած ընդհանուր բերքը պակաս կստացվի։ Նկատի ունենալով այս, բոլոր միջոցները պետք է ձեռք առնել, որպեսզի թե փնջերի թիվը, և թե փնջերի մեջ բույսերի քանակը լրիվ պահպանվի։

Մշակությունն այս ձևով կատարելու դեպքում, 70 սմ. միջշարքային և 40—50 սմ. միջփնջային տարածություն պետք է թողնել։ Այսպիսով, մեկ հեկտարի վրա կստացվի մոտ 20,400 փունջ։ Յուրաքանչյուր փնջում, ինչպես մյուս բամբակագործական ռեսպուբլիկաների փորձերը ցույց են տալիս, պետք է թողնել 3—4 բույս, ընտրում ուժեղ հողերում՝ որտեղ շատ փարթամ աճող բույսեր են սպասվում, պետք է թողնել 3 բույս, հատկապես 246 սորտի դաշտերում, իսկ մնացած դեպքերում՝ 4 բույս։ Փնջերի մեջ 3 բույս թողնելու դեպքում հեկտարի վրա կստացվի 61.200 բույս, իսկ 4 բույսի դեպքում՝



81,600 բույս։ Ինչպես տեսնում ենք, այս երկու վարիանտների տարբերությունը բավական մեծ է, ուստի պետք է աշխատել հողի ընտրությունը ճիշտ կատարել։

Բամբակի բերքատվության բարձրացման հիմնական պայմաններից մեկն էլ բամբակենու ճիշտ և ժամանակին ջրելն է։ Բամբակենու վեգետացիոն ջրերը պետք է կատարել խիստ դիֆերենցիացիայի ենթարկված, հաշվի առնելով ագրոտեխնիկական ձեռնարկումները, հողային և կլիմայական պայմանները (հողի ջրթափանցությունը, խոնավությունը, հողի բերրիությունը, մեխանիկական կազմը, ստորերկրյա ջրերի խորությունը և այլն) բամբակի սորտերը և հողամասերի ջրով ապահովված լինելը։

Վերջին տարիների փորձը ցույց է տալիս, որ փոքր նորմաներով հաճախակի ոռոգումը վճռական նշանակություն ունի բամբակի բերքի բարձրացման գործում։ Հենվելով բամբակագործական առաջավորների փորձի վրա, չպետք է ձգձգել վեգետացիոն ջրերի սկիզբը, միաժամանակ միշտ հաշվի առնել, որ վեգետացիոն ջրի ժամկետների միակ չափանիշը բույսերի վիճակըն է հանդիսանում։

Վերջին տարիներում ստախանովական բամբակագործները բամբակի դաշտերը ջրով ապահովելու գործում շատ մեծ նվաճումներ ձեռք բերին։ Նրանք այս ուղղությամբ համարձակորեն կիրառեցին միանգամայն նոր սկզբունքներ և դրա հետ միասին կատարելագործեցին ջրելու ձևերը։

Այժմ Սովետական Միության բամբակի դաշտերում լայնորեն կիրառվում է ջրելու ակոսային ձևը, որը համեմատած մարգային կամ ողողման հետամնաց ձևերի հետ, մի շարք առավելություններ ունի։ Ակոսային ջուրն անհամեմատ ավելի բարձր արդյունք է տալիս, եթե ակոսների ջուրը տրվում է խողովակներով։

Այժմ խողովակային ջրումը Միության բամբակագործական շրջաններում, գնալով տարածվում է։ Ուզբեկստանում վերջին 1—2 տարվա փորձերը ցույց տվին ջրման այս ձևի խոշոր առավելությունները։ Մեզ մոտ նույնպես Ղամարլվի շրջանում 1939—40 թվականներին ՄՏԿ-ի և հողբաժնի գլխավոր ագրոնոմների նախաձեռնությամբ, այս ուղղությամբ կատարված կոլխոզային փորձերը շատ մեծ արդյունք տվին։



Ի՞նչ առավելություններ ունի ցանքսի խողովակային ջրումը։

ա) Խողովակների միջոցով ջրելիս, ջուրն ակոսների մեջ բաց է թողնվում բարակ հոսանքով, որի շնորհիվ ջուրը չի ողողում դաշտի ամբողջ մակերեսը, այլ ակոսների մեջ դանդաղ հոսելով, լավ ներծծվում, թափանցում է հողի մեջ և դրա շնորհիվ բույսերի արմատների գրաված տարածությունը խոնավությամբ լրիվ հագենում է։ Դաշտի վրա ջուրը բաշխվում է հավասարաչափ։

բ) Ջրի բարակ և դանդաղ հոսանքի շնորհիվ, հողի ստրուկտուրան (կառուցվածքը) չի քայքայվում, բույսերի շուրջը կեղևակալում համարյա տեղի չի ունենում, որի շնորհիվ օդի փոխանակությունը հողի մեջ (աերացիան) շատ ավելի հաջող է կատարվում։

գ) Ջուրը ծախսվում է խնայողաբար։

դ) Այս ձևով հնարավոր է միաժամանակ մեծ տարածություն ջրել, որի շնորհիվ բարձրանում է կուլտիվացիայի և քաղհանի որակը և արտադրողականությունը։ Կուլտիվացիան և քաղհանն ավելի հեշտ և բարձր որակով է կատարվում։

ե) Գիշերային ջրումն ակոսախողովա-

կային ձևով կատարվում է ավելի հեշտ և ավելի որակով։

Խողովակային ջրի այս բոլոր դրական կողմերի շնորհիվ, բամբակի բույսերը շատ ավելի փարթամ են աճում, ավելի արագ են պտղակալում, պտղաթափումը փոքր է լինում և հետևաբար, ավելի բարձր բերք է ստացվում։

Ագրոտեխնիկական ձեռնարկումների լրիվ կիրառման շնորհիվ, մեր ռեսպուբլիկայի առաջավոր բամբակագործ կոլխոզները և բրիգադաները, օղակները, կարողացել են ստանալ բամբակի բարձր բերք։ Այսպես օրինակ՝ անցյալ տարի Ղամարլուի շրջանի Իմանշալու գյուղի կոլխոզը 70 հեկտար տարածությունից միջին հաշվով ստացել է հեկտարից 34 ցենտներ բամբակ։

Վաղարշապատի «Անաստասավան» կոլխոզը, որ պարգևատրված է Լենինի շքանշանով, 270 հեկտար տարածությունից միջին հաշվով մեկ հեկտարից ստացել է 27 ցենտներ բամբակ։ Ղամարլուի շրջանի Ջոհրաբլու գյուղի կոլխոզի օղակավար Վարինկա Փանոսյանը 4,5 հեկտար տարածությունից՝ մեկ հեկտարից միջին հաշվով հավաքել է 50 ցենտներ բամբակ։ Հոկտեմբերյանի շրջանի Քյալագյարխ գյուղի



կոլխոզի օղակավարուհի Հրանուշ Մխիթարյանը, որը պարգևատրված է Լենինի շքանշանով, 4 հեկտար տարածությունից միջին հաշվով ստացել է հեկտարից 50 ցենտներ բամբակ։ Այսպիսի օրինակներ կարելի է շատ բերել։

ՍՍՌ Միության Ժողկոմսովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի «Հայկական ՍՍՌ-ում գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և անասնաբուծության մթերատվությունը բարձրացնելու համար, կոլխոզնիկների աշխատանքի լրացուցիչ վարձատրության մասին» 1941 թ. մարտի 13-ի որոշումը բացառիկ կարևոր նշանակություն ունի մեր ռեսպուբլիկայում սոցիալիստական գյուղատնտեսության հետագա վերելքի և կոլխոզների ու կոլխոզնիկների ունևորության էլ ավելի աճման համար։ Այս որոշումը լիկվիդացիայի է ենթարկում կոլխոզնիկների աշխատանքի վարձատրության մեջ եղած անարդարությունը և հավասարեցումը։ Այդ որոշմամբ «օղակին ամրացված ցանքի տարածության վրա բերքատվության պլանից ավելի ստացված բամբակի յուրաքանչյուր ցենտների համար այդ օղակի կոլխոզնիկներն ստանում են փողով լրացուցիչ վարձատրություն, կոլ-

խոզում բամբակի մեկ ցենտներ հումքի միջին արժեքի (մթերակայանի վճարը) 50 տոկոսի չափով, ներառյալ հիմնական վարձատրությունը և կոլխոզից ստացած պարգև-հավելումները»։

Աշխատանքի վարձատրության այս կարգն արտադրողականության բարձրացման նոր խթան է հանդիսանում և խոշոր չափով նպաստում է կոլխոզի հասարակական սեփականության աճման գործին, կոլխոզնիկների անհատական շահագրգռվածությունը բարձրացնելու, նրանց էլ ավելի ունևոր դարձնելու գործին։

---



# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԶՐՈՒՅՑԸ ԾԽԱԽՈՏԱԳՈՐԾԱԿԱՆ ԿՈԼԽՈԶՆԵՐՈՒՄ

Ծխախոտագործությունը Հայաստանի գյուղատնտեսության կարևոր ճյուղերից մեկն է։ Այդ կուլտուրան խոշոր նշանակություն ունի մեր սոցիալիստական արդյունաբերության և կոլխոզները տնտեսապես ամրապնդելու, կոլխոզնիկներին ունևոր դարձնելու համար։

ՍՍՌՄ Ժողկոմսովետի և ՀամԿ(բ)Պ ԿԿ-ի «Հայկական ՍՍՌ-ում պտղաբուծությունն ու խաղողագործությունը և տեխնիկական կուլտուրաները զարգացնելու ձեռնարկումների մասին» սեպտեմբերի 6-ի որոշումն էլ ավելի լայն հնարավորություններ ստեղծեց Սովետական Հայաստանում լայնացնելու ծխախոտի մշակության տարածությունները։ Ըստ այդ որոշման 1941 թվին Հայաստանում ծխախոտ մշակվում է 6700 հեկտար տարածության վրա, 1944 թվին

մշակվելու է 10.500 հեկտար տարածության վրա։

Ծխախոտի բարձր բերք ստանալու համար, պետք է լրիվ կերպով կիրառել պահանջվող ագրոկանոնները։

Մեր այսօրվա զրույցը մենք կնվիրենք այն հարցերին, թե որոնք են այդ ագրոկանոնները և ինչպես են մեր կոլխոզը և բրիգադան կիրառում դրանք ծխախոտի մշակման ընթացքում։

Նախ խոսենք սածիլման մասին։

Սածիլումը պետք է կատարել ցրտահերկի կամ սև ցելի տակ դրած հողերի վրա, հողը նախօրոք ենթարկելով լավ մըշակման ու պարարտացման, մեկ հեկտարի վրա սածիլների քանակը պետք է պահպանել «սամսուն» սորտի համար՝ միջինը 80.000 հատ, իսկ «տրապիզոնի» համար՝ 70.000 հատ։ Սածիլելուց հետո, 5—6 օրում պետք է չորացած և փչացած սածիլների տեղը տնկել նոր սածիլներ, որպեսզի հնարավոր լինի մեկ հեկտարի վրա պահպանել պահանջվող սածիլների քանակը։

Ջրովի շրջաններում, սածիլելուց 1—2 օր հետո անհրաժեշտ է դաշտը ջրել, որից կախված է սածիլների հաջող կպչողականությունը։ Դրա համար էլ այդ ջուրը ծխա-



խոտագործ կոլտնտեսականներն անվանում են «հոգեջուր»։ Սածիլումը պետք է ավարտել 20—30 օրում և կատարել այն առավոտյան ու երեկոյան ժամերին։ Ամեն կերպ պետք է խուսափել սածիլման տևողությունը երկարացնելուց, որովհետև ուշ տնկված սածիլները ենթակա են լինում զանազան հիվանդությունների, զարգանում են աննորմալ, բերքի 5—6-րդ քաղերը ենթարկվում են աշնան վաղահաս ցրտերին, մանավանդ լեռնային ու նախալեռնային շրջաններում (Բասարգեչար, Մարտունի, Ն. Բայազետ, Կարմիր, Վաղպատ, Սիսիան և այլ նման շրջաններում)։ «Սամսուն» և «դյուկուլակ» սորտերի սածիլները պետք է տնկել իրարից 15—18 սմ. հեռավորության վրա, իսկ շարքը շարքից ներքև պետք է լինի 50 սմ. հեռավորությամբ։ «Տրապիզոն» սորտի սածիլները պետք է տնկել 20—22 սմ.-ի վրա։

Սածիլման աշխատանքներն ավարտելուց հետո, սկսվում են ցանքի խնամքի աշխատանքները։ Հողը փխրեցնելու, մոլախոտերից մաքուր պահելու և հողում անհրաժեշտ խոնավություն պահպանելու համար, անհրաժեշտ է ծխախոտի դաշտերում կատարել կուլտիվացիա և քաղհան՝ ձեռքի ու-

ակոսներում (թմբամեջերում)։ Քաղհանը և փխրեցումը պետք է կատարել առնվազն 4 անգամ, իսկ մոլախոտերով ուժեղ վարակված հողամասերում՝ 5—6 անգամ։ Հողի փխրեցման աշխատանքները և քաղհանը պետք է կատարել ամեն անգամ դաշտը ջրելուց 2—3 օր հետո (հողի քեշի ժամանակ)։ Առաջին փխրեցումը և քաղհանը պետք է կատարել սածիլելուց 6—8 օր հետո, երկրորդը՝ առաջինից 8—10 օր հետո, 4-րդ փխրեցումը 3-րդից՝ 7—8 օր հետո։

Կուլտիվացիայի և քաղհանի խորությունը կախված է հողի առանձնահատկություններից. ծանր հողերում կուլտիվացիան նպատակահարմար է կատարել 10—12 սմ. խորությամբ, թեթև և ավազային կամ փխրուն հողերում՝ 8—10 սմ., իսկ ձեռքի քաղհանը՝ 6—8 սմ.։

Ծխախոտի դաշտերը փուխր և մոլախոտերից մաքուր պահելու ամենալավ միջոցը ձիու կամ տրակտորային կուլտիվացիան է, որով բարձրանում է աշխատանքի արտադրողականությունը և կրճատվում է բանվորական ուժի ծախսը։ Սակայն մեզ մոտ այս միջոցը դեռ հազվադեպ է օգտագործվում։ Այս տարի ծխախոտի մշակության աշխատանքներում պետք է հա-



տուկ ուշադրություն դարձնել այս կարևոր ձեռնարկման լայն չափերով կիրառման վրա։

Ծխախոտի կուլտիվացիայի և քաղհանի աշխատանքներին զուգընթաց, պետք է կազմակերպել նաև սնուցման աշխատանքները, սնուցում տալով առնվազն 1—2 անգամ, որի համար կարելի է օգտագործել օրգանական և հանքային պարարտանյութերը։ Առաջին սնուցումը պետք է կատարել 2-րդ փխրեցման ժամանակ, իսկ երկրորդը՝ առաջինից 15—20 օր հետո։ Առաջին սնուցման ժամանակ մեկ հեկտարին պետք է տալ 45—50 կիլոգրամ ամոնիում-սուլֆատ, 80—100 կիլոգրամ սուպեր-ֆոսֆատ։ Որպես ազոտային պարարտանյութ կարելի է օգտագործել թռչնաղբը, հեկտարին տալով 3—4 ցենտներ, որի հետ պետք է տալ նաև 80—100 կիլոգրամ սուպերֆոսֆատ։

Սնուցման համար կարելի է օգտագործել նաև ժիժան, տալով հեկտարին 2—3 տոննա։ Թե թռչնաղբը և թե ժիժան, նախօրոք պետք է մաքուր ջրով լիքը տակառում լավ խառնել և նոր օգտագործել։ Երկրորդ սնուցման ժամանակ պետք է տալ ամոնիում-սուլֆատ 30—35 կիլոգրամ, սու-

պեր-ֆոսֆատ 60—70 կիլոգրամ։ Առհասարակ սնուցումը պետք է կատարել փոցխումից առաջ և հետո ջրել։

Ծխախոտի բարձր և որակով բերք ստանալու համար, խոշոր նշանակություն ունի նաև ծխախոտի ծաղկատումը և բջատումը, որը կատարում են ծխախոտի սածիլումից մեկ ու կես—երկու ամիս հետո։ Ծաղկատման և բջատման մոմենտը պետք է ճիշտ ընտրել։ Ըստ որում ծաղկատումը պետք է կատարել մասսայական ծաղկման ժամանակ։ Այդ հատկապես անհրաժեշտ է սննդով աղքատ հողերի համար, որովհետև երբ ծաղիկը և բջերը մնում են ծխախոտի բույսի վրա, նրանք վերցնում են սնունդը և ծխախոտից ստացված տերևները լինում են նվազ և աղքատ սննդանյութերով, իսկ երբ ծաղկատման և բջատման աշխատանքները կատարվում են պահանջված ժամանակին, բույսի կողմից վերցված սննդանյութերը գնում են դեպի տերևները և թե քանակով, թե որակով ավելի լավ բերք է ստացվում։

Անհավասար ծաղկման դեպքում, ծաղկատումը կարելի է կատարել 1—2 անգամ, իսկ բջատումը պետք է կատարել 2—3



անգամ, հետևելով, որ բջերը 6—8 սանտիմետրից ավելի չմեծանան։

Պետք է ուժեղ պայքար ծավալել նաև ծխախոտի վնասատուների և հիվանդությունների դեմ։ Հայաստանում տարածված հիվանդություններից հատկապես աչքի են ընկնում՝ չեչոտությունը, ալյուրացողը, արմատափտախտը և մոզայիկա հիվանդությունները, որոնք զգալի կերպով իջեցնում են ծխախոտի բերքի թե քանակը և թե որակը։ Այս հիվանդություններից որևէ մեկը ծխախոտի աճման սկզբում հայտնաբերվելու դեպքում, պետք է անմիջապես հավաքել և այրել հիվանդոտ տերևները, վարակված օճախները և այդ օճախների շրջակայքը, 3—4 մետր տարածության վրա, սրսկել մեկ տոկոսանի բորդոյան հեղուկով։ Սակայն սրսկումը պետք է կատարել առաջին քաղից 25 օր առաջ, որովհետև ուշ սրսկման ժամանակ բորդոյան հեղուկից առաջացած նստվածքը կարող է ազդել տերևների որակի վրա։ Հատկապես ալյուրացող հիվանդության երևան գալու դեպքում, պետք է վարակված բոլոր տերևները հավաքել և այրել ու վարակված բույսերը սրսկել մեկ տոկոսանի սոդայի լուծույթով, ըստ որում առաջին սրսկումը պետք է կատարել

հիվանդությունը երևալիս, իսկ երկրորդը՝ 15—20 օր հետո (ըստ պահանջի)։

Արմատափտախտով վարակված դաշտերում պետք է 2—3 անգամ լրացուցիչ քաղհան կատարել, իսկ եթե ջրովի հողամաս է, դադարեցնել ջրելը, արագացնել տերևների հավաքը և հիվանդությունը կանխելուց հետո տալ 1—2 անգամ սնուցում, իսկ ծաղկատումը և բչատումը կատարել ավելի արագ։

Ծխախոտի պարազիտներից ամենավտանգավորն է ճրագախոտը, որի դեմ պայքարելու համար պետք է աշնանը կատարել խոր վար, վարից հետո հավաքել ծխախոտի բոլոր արմատները և այրել։ Ծխախոտի սածիլումը պետք է կատարել ավելի առողջ սածիլներով, մշակումը, բերքահավաքը կատարել ժամանակին։ Այն հողերում, որոնք ուժեղ վարակված են, 5—7 տարի ծխախոտ չպետք է ցանել։

Վնասատուներից ծխախոտին ամենից շատ վնաս են հասցնում տրիպսը, լվիճը, աշնանային որդը, ixշախածանչը և այլն, որոնց դեմ պայքարելու համար, պետք է ուժեղ պայքար տանել մոլախոտերի դեմ, թե դաշտի ներսում, և թե դաշտի շրջակայքում։ Ծխախոտի դաշտին մոտիկ չպետք է մշակել կարտոֆիլ, արևածաղիկ, պոմիդոր,



սոխ, լոբի, քանի որ այդ բույսերի վրա ևս զարգանում են այդ վնասատուները։

Ծխախոտի բերքատվության բարձրացման ամենահզոր միջոցներից մեկն է ցանքաշրջանառությունը, որը կիրառելու դեպքում, հնարավոր է լրիվ և ժամանակին կիրառել պահանջվող ագրոկանոնների կոմպլեքսը։ Սակայն ցանքաշրջանառությունը մեզ մոտ դեռևս չի կիրառվում։

Ագրոկանոնների լրիվ կիրառման դեպքում, մեր ծխախոտատագործ շրջանների կոլխոզնիկները հնարավորություն կունենան ստանալու բարձր բերք, ինչպիսին ստացել են մեր մի շարք շրջանների ծխախոտագործական կոլխոզները, բրիգադաները, օղակները և անհատ կոլտնտեսականները։ Օրինակ՝ Շամշադինի շրջանի Թովուզ գյուղի ընկ. Բերիայի անվան կոլտնտեսությունը մեկ հեկտարից միջին հաշվով 19,8 ցենտներ բերք է ստանում, որի շնորհիվ 3 տարի շարունակ մասնակցում է Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսին։ Հիշյալ կոլխոզը 1939 թ. Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսային կոմիտեի կողմից պարգևատրվել է առաջին կարգի դիպլոմով, ստանալով մեկ մարդատար մեքենա և 10.000 ռ. դրամ։ Կոտայքի շրջանի Արամուս գյուղի

կոլտնտեսությունը ծխախոտի բարձր բերքի համար պարգևատրվել է երկրորդ կարգի դիպլոմով, ստանալով մեկ մոտոցիկլետ և 5000 ռ. դրամ: Շամշադինի շրջանի Ն. Կ. Աղբյուր գյուղի կոլխոզի բրիգադիր, Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի թեկնածու ընկ. Պետրոսյան Համբարձումը, 3 տարում (1938, 1939, 1940 թ. թ.) ծխախոտի միջին բերք է տվել 20,3 ցենտներ, այդ նույն շրջանի Թովուզ գյուղի ընկ. Բերիայի անվան կոլխոզի բրիգադիր ընկ. Մաճկալյան Վասիլի բրիգադան 16 հեկտար տարածությունից 1940 թվին ստացել է 22 ցենտներ միջին բերք:

Կոտայքի շրջանի Թազագյուղի «Կարմիր Մաճկալ» կոլտնտեսության օղակավարուհի ընկ. Աղիզյան Յաղդուշը յուրաքանչյուր մեկ հեկտարից 21,83 ցենտներ ծխախոտի միջին բերք է ստացել, Ազատյան Վիկտորիան՝ 21,8 ցենտներ և այլն: Այն կոլխոզները, բրիգադաներն ու օղակները, որոնք վատ են պայքարել ծխախոտի ագրոկանոնների կիրառման ու լավ մշակման համար, նրանք ստացել են ցածր բերք և չնչին դրամական եկամուտ: Օրինակ՝ Շամշադինի շրջանի Նավուր գյուղի Կիրովի անվան կոլտնտեսու-



թյունը 1940 թ. հեկտարից 5 ցենտներ միջին բերք է ստացել, Ղրղիի կոլխոզը՝ 6 ցենտներ և այլն: Նավուրի կոլխոզը 1940 թ. ամբողջ դաշտավարությունից ստացել է 43,100 ռ. դրամական եկամուտ, այնինչ, այդ նույն ժամանակ Թովուզի ընկ. Բերիայի անվան կոլխոզը միայն ծխախոտի պարգև-հավելում է ստացել 149.755 ռ., Պառավաքարի Շևչենկոյի անվան կոլխոզը՝ 122.236 ռ., Բերդի «Նոր Կյանք» կոլխոզը՝ 45,750 ռուբլի և այլն: Այս փաստերը ցույց են տալիս, որ այն կոլխոզները, որոնք պայքարում են հանուն բարձր բերքի և կիրառում են ագրոկանոնները, հսկայական նյութական օգուտներ են ստանում:

Ծխախոտի բերքատվության բարձրացման համար խոշոր նշանակություն ունի նաև աշխատանքի կազմակերպումը ծխախոտագործական կոլտնտեսություններում: Համաձայն ՍՍՌՄ Ժողկոմսովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի ս. թ. մարտի 13-ի «Հայկական ՍՍՌ-ում գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և անասնաբուծության մթերատվությունը բարձրացնելու համար կոլխոզնիկների աշխատանքի լրացուցիչ վարձատրման մասին» որոշման, խոշոր ծխախոտագործական կոլտնտեսություններում և դաշ-

տավարական բրիգադաներում կազմակերպվել են առանձին ծխախոտագործական օղակներ։ Այդ օղակներում պետք է կիրառել անհատական գործարքը, որը մեծ չափով կնպաստի ծխախոտի բերքատվության բարձրացման գործին, որովհետև անհատական գործարքով աշխատող օղակի անդամն ամբողջովին պատասխանատու է դառնում իր մշակած հողակտորի համար։ Մեր մի շարք շրջանների օրինակները ցույց են տալիս, որ անհատական գործարք կիրառող օղակների անդամները տվել են բարձր բերք։ Շամշադինի շրջանի Թովուզ գյուղի ընկ. Բերիայի անվան կոլխոզի կոլտնտեսուհի Մաճկալյան Սաթենն աշխատելով անհատական գործարքով, 1940 թվին հեկտարից 23 ցենտներ միջին բերք է տվել, այդ նույն կոլխոզի կոլտնտեսուհի Շաքարյան Հայկանուշը՝ 24,1 ցենտներ բերք և այլն։ Այսպիսի բարձր բերք տվողների շատ օրինակներ կարելի է բերել, որոնք հանդիսանում են Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի թեկնածուներ։ Մարտի 13-ի որոշումը մեծ հնարավորություններ է տալիս օղակներին՝ ծխախոտի բարձր բերք ստանալու և ծխախոտագործ օղակների անդամներին ա-



վելի մեծ վարձատրություն ստանալու համար։

Այդ որոշման մեջ ասված է.

«Օղակին ամրացված տարածության վրա բերքատվության պլանից ավելի ստացված ծխախոտի յուրաքանչյուր ցենտների համար այդ օղակի կոլխոզնիկներն ստանում են փողով լրացուցիչ վարձատրություն՝ հաշվի առնելով հանձնված արտադրանքի որակը, մեկ ցենտներ ծխախոտի համար, մթերման միջին գումարի 50 տոկոսի չափով, ներառյալ հիմնական վարձատրությունը և կոլխոզի ստացած պարգև-հավելումները»։

Սոցիալիստական մրցության կազմակերպման, ստախանովյան շարժման ծավալման ու առաջավորների փորձի լայն կիրառման միջոցով պետք է լավագույն կերպով նախապատրաստվել ծխախոտի բերքահավաքին, ժամանակին ավարտել չորանոցների կառուցումը և մյուս նախապատրաստական աշխատանքները։

---

## ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԹԵՄԱՆԵՐԻ ՇՈՒՐՋԸ

# „ԿՌԻՎՆ ԱՏԼԱՆՏԻԿԱՅՈՒՄ“

## ՊԱՏԵՐԱԶՄԻ ՎՃՌԱԿԱՆ ՃԱԿԱՏԸ

Պատերազմի բալկանյան ռազմաբեմում ապրիլի սկզբներին ծավալված պատերազմական գործողությունները ընդունել են այն աստիճան լայն չափեր, որ ստվերի տակ են թողել Մեծ-Բրիտանիայի ատլանտյան կոմունիկացիաներում (հաղորդակցության ճանապարհներ) մղվող պայքարը: Մինչդեռ հենց այդտեղ, կենտրոնական և հյուսիս-արևմտյան Ատլանտիկայում է առաջվա պես գտնվում պատերազմի գլխավոր ճակատը: Այս պատերազմի երկրորդ ամառային կամպանիան սկսվեց բրիտանական նավագնացության վրա գերմանական ծովային և օդային ուժերի ուժգին գրոհով:



Վերջին շաբաթներս գլխավորեն աճել են բրիտանական առևտրական նավատորմի կորուստները, նավատորմ, որն իրոք որ վիթխարի աշխատանք է կատարում: Բավական է աչքի անցկացնել քարտեզը, որպեսզի պարզ լինի այն խնդրի նշանակությունը, որ պատերազմը դրել է բրիտանական առևտրական նավատորմի վրա. նա պետք է նորմալ, անընդհատ կապ պահպանի Բրիտանական կղզիների ու Բրիտանական կայսրության մյուս մասերի միջև, ինչպես նաև Ամերիկայի Միացյալ Նահանգների հետ:

Մեծ-Բրիտանիան ամբողջապես կախված է իր ծովային կոմունիկացիաներից, ինչպես ոչ մի այլ խոշոր տերություն: Նա ինքը բավարար քանակությամբ չի արտադրում ո՛չ պարենամթերք, ո՛չ էլ հումք: Թե՛ մեկը, և թե՛ մյուսը նա ներմուծում է ծովային ճանապարհով, շատ երկրներից: Բրիտանական ծովային գերատեսչության տվյալներով, որոնք մշակվել և հրապարակվել էին 1937 թվականին, անդրծովյան երկրներից Մեծ-Բրիտանիա ներմուծվելիս է եղել (տոկոսներով՝ պահանջի համեմատությամբ). երկաթահանք՝ 88%, պղինձ՝ 95%, ալյումինիում՝ 93%, նիկել՝ 81%, կապար՝ 99%, ցինկ՝ 90%, անագ՝ 80%,

մարգնեցիա՝ 85%, նավթ՝ 75%, բուրդ՝ 88%, բամբակ՝ 90%, ջութ՝ 100%, կաուչուկ՝ 91%, փայտեղեն՝ 82%:

Այսպես էր դրությունը հումքի հիմնական տեսակների նկատմամբ:

Մեծ-Բրիտանիան անդրծովային մատակարարումից կախված եղել է ոչ պակաս չափով նաև պարենամթերքի ապարիզում: Նույն այդ 1937 թվին երկրում ներմուծվել է (տոկոսներով՝ պահանջի համեմատությամբ). ցորեն՝ 89%, եգիպտացորեն՝ 93%, գարի՝ 71%, վարսակ՝ 77%, բրինձ՝ 79%, թեյ՝ 96%, սուրճ՝ 79%, կակաո՝ 90%, շաքար՝ 79%, միս՝ 84%, յուղ՝ 93%, պանիր՝ 97%:

Այս տվյալները, չնայած իրենց պգալի մեծությանը, այնուամենայնիվ լրիվ չեն, քանի որ իրականում Մեծ-Բրիտանիան հումքի վերոհիշյալ բոլոր տեսակների վերաբերմամբ, իսկ պարենամթերքի ապարիզում ամբողջապես՝ այսինքն՝ 100%-ով, կախված է ներմուծումից: Այնուամենայնիվ, բերված տվյալները միանգամայն բավարար են գաղելու համար, թե Մեծ Բրիտանիային ինչպիսի՞ հետևանքներ է սպառնում արտաքին աշխարհի հետ նրա ծովային կոմունիկացիաների ընդհատումը:



Սակայն կոմունիկացիաներում մղվող պայքարի նշանակությունը դրանով դեռ չի սահմանափակվում: Պատերազմ վարելը հենց կախված է այն բանից, թե բրիտանական հրամանատարությունն ի՞նչ չափով կկարողանա ազատորեն մանևրել իր ուժերով, այսինքն՝ կատարել զորքի, ավիացիայի վերախմբավորումներ, ապամամթերք փոխադրել զանազան ճակատները: Այդ ճակատների գոյությունը, ասենք՝ Բալկաններում կամ Աֆրիկայում, ինչպես նաև կայսրության տիրապետությունների պաշտպանությունը, օրինակ՝ Հնդկական և Խաղաղ օվկիանոսների ավազաններում, անհնարին է, առանց նորմալ կերպով գործող կոմունիկացիաների:

Երբ անցյալ տարվա նոյեմբերին նախապատրաստվում էր բրիտանական զորքերի հարձակումը Հյուսիսային Աֆրիկայում, անգլիական առևտրական նավատորմը մետրոպոլիայից (մայր երկրից) Եգիպտոս փոխադրեց մի քանի հազար տանկ, մեծաթիվ ավիացիա, տասնյակ հազարավոր զորք, հսկայական քանակությամբ ռազմական ունեցվածք. առևտրական նավատորմի նավերով սեզերվներ փոխադրվեցին Ավստրալիայից, Նոր Զելանդիայից և Հարավային Աֆրիկայից: Բեն-

դաշին գրավելուց հետո (այս տարվա փետրվարի 6-ին) սկսվեց գեներալ Ուեյվելի բանակի զորամասերի հետ-փոխադրումը, դարձյալ ծովով, դեպի արևելք, Հաբեշստան, իսկ փետրվարի վերջերից՝ նաև Հունաստան: Միջերկրական ծովում կենտրոնացված բրիտանական բավականաչափ խոշոր տրանսպորտային նավատորմը համեմատաբար կարճ ժամանակամիջոցում կատարեց Մերձավոր Արևելքում բրիտանական ուժերի վերախմբավորման մեծ ու բարդ խնդիրը:

Այսպիսով, անհիմն չէ, երբ ասում են, թե կոմունիկացիաները— բրիտանական ստրատեգիայի ներվերն են:

Այդ հատկապես ճիշտ կլինի, եթե հաշվի առնենք, որ Մեծ-Բրիտանիային ռազմամթերք, զենք և ստրատեգիական հումք մատակարարելն ուղղակի կախման մեջ է գտնվում այն բանից, թե որքանով է ապահովված կապն Ամերիկայի Միացյալ Նահանգների հետ: Հետևապես պայքարը կոմունիկացիաների համար—միևնույն ժամանակ պայքար է թիկունքի համար, ռեսուրսների համար, պատերազմ վարելու բուն հնարավորության համար:

Վերլուծելով այդ պայքարի ընթացքը,



շվեյցարական «Նեյե ցյուրիխեր ցայտունգ» թերթի Լոնդոնի թղթակիցը վերջերս գրում էր, թե՝ «Գերմանական գլխավոր շտաբի հիմնական ուշադրությունն ուղղված է ո՛չ այնքան բրիտանական նավահանգիստների, որքան Ատլանտյան օվկիանոսում կատարվող նավագնացության վրա: Այդ կապակցությամբ չափազանցություն չի լինի եթե ասենք, որ Ատլանտյան օվկիանոսը դառնում է ներկայիս պատերազմի վճռական ճակատներից մեկը, եթե ոչ՝ ամենավճռական ճակատը: Եթե Մեծ-Բրիտանիային հաջողվի պահպանել ԱՄՆ-ի հետ հաղորդակցության իր ուղիները, այն ժամանակ նա ռազմական տեսակետից կլինի անխոցելի, քանի որ Ամերիկայի Միացյալ Նահանգների հսկայական արդյունաբերական հզորության օգնությամբ նրա համար համեմատաբար հեշտ կլինի ուժերի հավասարության հասնել Գերմանիայի հետ, իսկ որոշ ժամանակից հետո նույնիսկ ձեռք բերել գերակշռություն»:

Ահա՛ թե ինչու հազիվ թե գերմանական հրամանատարության գլխավոր նպատակն այն չի հանդիսանում, որ Մեծ Բրիտանիային ստրատեգիական տեսակետից կտրի ԱՄՆ-ից: Եթե այդ հաջողվի, ապա

Մեծ-Բրիտանիան դեմ առ դեմ կանգնած կլինի գերմանական բանակի բրիտանական կղզիները ներթափանցելու ռեալ սպառնալիքի առջև: Այստեղից եզրակացություն է արվում, որ պայքարը կոմունիկացիաներում, ներթափանցման նախերգանքն է, այսինքն՝ այնպիսի գործողություն, որը, գերմանական հրամանատարության կարծիքով, պետք է պատերազմն ավարտի Մեծ Բրիտանիայի նկատմամբ հաղթանակով:

Ըստ որում անհրաժեշտ է հաշվի առնել ժամանակի գործոնը: Գերմանական մամուլը բազմիցս ընդգծել է, որ պատերազմն այս տարի ավարտելը գերագույն հրամանատարության գլխավոր ստրատեգիական խնդիրն է:

Մեծ Բրիտանիայի համար հարցը մի փոքր այլ կերպ է դրված: Այնտեղ հասկանալի պատճառներով չահագրգռված են, որ պայքարը ձգձգվի առնվազն մի քանի տարի, որովհետև այդ ժամանակվա ընթացքում Մեծ Բրիտանիան կկարողանա ուժեր կուտակել: Բրիտանական շրջաններում հայտարարում են, որ եթե այս տարի Մեծ Բրիտանիան «դիմանա», ապա հետագայում նրա համար ավելի հեշտ կլինի դիմադրել գերմանացիների գրոհին, որովհետև այն ժամանակ կսկսվի լայն չափերով ռազմա-



կան մատակարարում ստացվել ԱՄՆ-ից և անգլո-ամերիկյան բլոկի զինված ուժերն էլ շատ անգամ ավելի կմեծանան ու կկոմպլեկտավորվեն վարժեցված կադրերով:

Ամերիկյան հայտնի ռազմական տեսաբան Հենսոն Բոլդուինի կատարած հաշիվներով, 1941 թ. փետրվարին Մեծ Բրիտանիայի և Գերմանիայի ռազմական ուժերի փոխհարաբերությունը հետևյալն է եղել.

| | ՄԵԾ ԲՐԻՏԱՆԻԱ | ԳԵՐՄԱՆԻԱ |
| --- | --- | --- |
| Բանակ . . | 5.000.000 մարդ[1] | 4.500. 000 մ. |
| Նավատորմ հիմնական կարգի նավեր | 358 | 181 |
| Ավիացիա ընդամենը ինքնաթիռներ | 24. 000 | 33.000 |
| առաջին գծի ինքնաթիռներ | 12. 000 | 18.000 |

Բոլդուինի տվյալները բավականաչափ ակնառու պատկերացում են տալիս ներ-

1) Ներառյալ տեղական պաշտպանության զորամասերը («հոմ գարդ»):

կայիս պատերազմի մեջ հիմնական հակառակորդների ուժերի միջև գոյություն ունեցող հարաբերության մասին: Անհրաժեշտ է միայն ասել, որ գերմանական նավատորմն ունի ավելի քան 181 նավ: Գերմանական բանակում, ըստ երևույթին, կա ավելի քան 4.500.000 մարդ: Ճշմարտությանն ամենից ավելի մոտ են ամփոփային վերաբերող տվյալները: Հարկավոր է նաև նկատի ունենալ, որ եթե գերմանական և բրիտանական բանակների թվական կազմը մոտավորապես նույնն է, ապա բնավ էլ նույնը չէ նրանց ռազմական պատրաստությունը: Այդ պատճառով էլ, եթե Գերմանիայի համար 4.500.000 մարդուց բաղկացած բանակը նշանակում է առնվազն 125 առաջին գծի մարտական դիվիզիա, ապա ներկայումս Բրիտանական կայսրությունում զենքի տակ գտնվող 5 միլիոն մարդուց առաջին գծի մարտական զորամասերի մեջ, Բոլդուինի կարծիքով, առայժմ կարող է մտցված լինել ոչ ավելի, քան 1.500 հազար մարդ, որը կազմում է 50 դիվիզիա: Ուստի, ժամանակ շահելը Մեծ Բրիտանիայի համար նշանակություն ունի նաև նրա մարտական ուժերը նախապատրաստելու տեսակետից:

Ատլանտյան օվկիանոսում մղվող կռիվ



մեջ ԱՄՆ-ի, առայժմ դեռ անուղղակի, մասնակցության ուժեղացումը կոմունիկացիաներում մղվող պայքարին տվեց ավելի լայն թափ, քան մինչև այժմ: Մեծ-Բրիտանիային «վարձակալման կարգով» զենք ու ռազմամթերք մատակարարելու օրենքի հաստատումն ամերիկյան կոնգրեսի կողմից, «Նոյե ցյուրիխեր ցայտունգ»-ի Բեռլինի թղթակցի հաղորդագրությամբ, հետաքրքրությունից ոչ-զուրկ արձագանքներ առաջացրեց Բեռլինի պաշտոնական շրջաններում, որտեղ այդ որոշումը գնահատվում էր «իբրև պատերազմի ձգձգմանը նպաստող մի տարր»: Բայց դա միայն նշանակում է, որ Ատլանտյան օվկիանոսում մղվող կռիվն արդեն ոչ միայն անգլո-գերմանական պրոբլեմ է, այլ նա դարձել է նաև գերմանո-ամերիկյան պրոբլեմ:

## Ո՞Վ Ո՞ՒՄ Է ԲԼՈԿԱԴԱՅԻ ԵՆԹԱՐԿՈՒՄ

Ատլանտյան կոմունիկացիաներում մեծ կատաղությամբ պայքար մղվում էր դեռ առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ: Ինչպես հայտնի է, այդ պայքարի հետևանքով Մեծ-Բրիտանիան և նրա դաշնակիցները կորցրին մի քանի հազար շոգենավ՝ ավելի քան 13 միլիոն տոննա ընդհանուր ջրածավալով: Այն ժամանակ

կները, որի օգնությամբ գերմանական հրամանատարությունը պայքար էր մղում կոմունիկացիաներում — ստորջրյա նավատորմն էր: Զգալիորեն ավելի փոքր դեր էին խաղում վերջրյա նավերը՝ ռեյդերները, — այսինքն օվկիանոսներում գործող հածանավերը և օվկիանոսային զինված շոգենավերը: Այն ժամանակ, ավելի քան քառորդ դար սրանից առաջ, գերմանական սուզանավերն ստիպված էին կռվել ոչ միայն այն մարտական խնդրի կատարման համար, որ դրել էր նրանց առջև հրամանատարությունը, այլև հենց գործողությունների շրջանը մտնելու համար: Բանն այն է, որ առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ գերմանական բանակներին չհաջողվեց գրավել Ֆրանսիական ծովափը (Պա-դը-Կալեի նեղուցը): Գերմանական արևմտյան ճակատի աջ թևը չկարողացավ Զեեբրյուգեից և Օստենդեից այն կողմն անցնել: Պա-դը-Կալեի նեղուցը մնաց դաշնակիցների ձեռքում և շրջապատվեց արգելափակոցների (ականներ, ցանցեր, վերջրյա ու օդային պահակախմբեր և այլն) բարդ սիստեմով: Գերմանական սուզանավերը մեծ ռիսկով էին մտնում օվկիանոս: Նրանցից շատերը



խորտակվում էին Պա-դը-Կալեի նեղուցն անցնելիս: 1917 թվականին դաշնակիցները փակեցին դեպի օվկիանոս տանող նաև հյուսիսային ելքը՝ Շոտլանդիայի ափերի և Նորվեգիայի արևմտյան ծովափի միջև: Այստեղ դրվեց հռչակավոր «Հյուսիսային մեծ արգելափակոցը», որի համար պահանջվեց մոտավորապես 100·000 ական: Դաշնակիցները մի քանի տասնյակ հազար ական դրել էին «Գերմանական ծովախորշում», որպեսզի գերմանական սուզանավերի համար դժվարացնեին իրենց բազաներից դուրս գալը: Բացի դրանից, սուզանավերի դեմ պայքարելու համար մոբիլիզացիայի էին ենթարկվել մոտ 5000 զանազան տիպի նավեր, ինչպես նաև զգալի օդային ուժեր: Ընդամենը, սուզանավերի դեմ պայքարելու գործում զբաղված էր 500 հազար մարդ:

Անգլիական ռազմա-ծովային գրող Հ. Վիլսոնի ասելով, Մեծ-Բրիտանիան իր աշխարհագրական դիրքով հենց Գերմանիայի համար փակում էր ճանապարհը դեպի օվկիանոս: Մեծ-Բրիտանիան, ինչպես մի պատնեշ, կտրում էր գերմանական ռազմա-ծովային ուժերի ճանապարհը դեպի օվկիանոսի ընդարձակ տարածություննե-

րը։ Վիլսոնի դիտողությունը զուրկ չէ հիմքից։ Գերմանական սուզանավերն ստիպված էին կորցնել առնվազն 10 օր, միայն նրա համար, որ կարողանային դուրս գալ գործողությունների շրջանը, այսինքն՝ Անգլիայի ու Իռլանդիայի արևմտյան ափերը ողողող ջրերի շրջանը. և վերադառնալ այնտեղից։ Ըստ որում, սուզանավերը կարող էին ծովում մնալ 20 օրից ոչ ավելի։ Հետևապես, սուզանավը չուներ բավականաչափ ժամանակ, որպեսզի կարողանար էֆեկտիվ կերպով օգտագործել իր յուրաքանչյուր անգամ ծով դուրս գալը։ Աշխարհագրական պայմաններն այսպիսի ազդեցություն էին գործում պայքարի ընթացքի վրա։

Այժմ ծովային ռազմաբեմի սահմանները այլևս փակված չեն, Հյուսիսային ծովից դեպի օվկիանոս դուրս գալու տեսակետից։ Այդ սահմաններն ընդարձակվեցին այն բանից հետո, երբ գերմանական զորքերը գրավեցին Նորվեգիան, Դանիան, Հոլանդիան, Բելգիան և Հյուսիսային Ֆրանսիան։ Այժմ Ֆրանսիական և Նորվեգական ջրերում բազաներ ունեցող գերմանական սուզանավերը կարիք չունեն շատ ժամանակ ծախսելու գործողությունների



շրջանը դուրս գալու համար. նրանք գտնվում են հենց գործողությունների շրջանում, որովհետև Ֆրանսիական ծովափից, մանավանդ Բրետանի ծովափից փոքր հեռավորության վրա արդեն անցնում են բրիտանական չափազանց կարևոր կոմունիկացիաները։

Ծովային ռազմաբեմում աշխարհագրական իրադրության փոփոխվելն ստացել է, ավելի մեծ նշանակություն այն կապակցությամբ, որ բացի սուզանավերից, և նրանց հետ փոխգործողությամբ, այստեղ գործում են գերմանական օդային ուժերը։ Սուզանավերն էլ հենց, որոնք նախորդ պատերազմի մեջ գործում էին միայնակ, այժմ բրիտանական փոխադրանավերի ու պահականավերի վրա գրոհում են միացյալ կերպով, ամբողջ նավատորմերի կազմով։ Ռազմա–ծովային տեխնիկայի զարգացումը, ճիշտ է, ուժեղացրել է հակասուզանավային միջոցները, բայց նույն այդ տեխնիկան սուզանավերին ևս տվել է նոր հնարավորություններ։ Առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ ռազմանավերից դիտողներն ամենից ավելի հաճախ սուզանավը հայտաբերում էին նրա պերիսկոպի միջոցով, որը դուրս–

վում էր ջրի մակերևույթից բարձր և ընթացքի ժամանակ հետք էր թողնում իր հետևից: Իսկ ներկայիս սուզանավերը կահավորված են ավելի կատարելագործված չտուրմանային սարքավորումով, որոնք նրանց հնարավորություն են տալիս հակառակորդի վրա գրոհել առանց իրենց պերիսկոպը ցույց տալու: Բացի դրանից, սուզանավի համար ամենից ավելի հաճախ իբրև «աչքեր» ծառայում են ինքնաթիռները, որոնք նրան հաղորդում են հակառակորդի կոորդինատները:

Բացի սուզանավերից և ավիացիայից, բրիտանական կոմունիկացիաներում գործում են նաև գերմանական վերջրյա ուժերը: Ճիշտ է, բրիտանական նավատորմը վերջրյա նավերի տեսակետից շատ ավելի ուժեղ է գերմանական նավատորմից և, վերջին հաշվով, դրանով է բացատրվում այն հանգամանքը, որ գերմանական հրամանատարությունն անցյալ տարվա հունիսին չգրոհեց Բրիտանական կղզիների վրա, խոշոր դեսանտի միջոցով: Բրիտանական նավատորմն այժմ էլ բացառիկ կարևոր դեր է խաղում Մեծ Բրիտանիայի պաշտպանության գործում: Այնուամենայնիվ, այդ նավատորմը չկարողացավ բրիտանա-



կան կոմունիկացիաները պաշտպանել գերմանացիների գրոհներից: Դա բացատրվում է նրանով, որ գերմանական վերջրյա ուժերը կազմված են գերազանցապես ականակիրներից, տորպեդային կատերներից, և արագընթաց գծանավերից: Գերմանական վերջրյա նավատորմի թեթև ուժերը, որոնց բազաները գտնվում են ֆրանսիական ծովափի նավահանգիստներում, հարվածներ են հասցնում բրիտանական նավագնացությանը Լա-Մանշում և Պա-դը-Կալեյում, այսինքն՝ հենց ճիշտ Մեծ-Բրիտանիայի մատույցների վրա: Բրիտանական ծովային գերատեսչությունը սիրտ չի անում իր դրեդնոուտներն (վիթխարի ռազմանավերը) ուղարկել Լա-Մանշի ջրային նեղ տարածությունները, որոնք վխտում են գերմանական տորպեդային կատերներով, ականակիրներով, սուզանավերով, բացի դրանից, այնտեղ նրանց օդից կսպառնային գերմանական ռմբակոծիչները: Դրա հետևանքով էլ, այս պատերազմի ընթացքում Մեծ-Բրիտանիայի առջև ավելի սուր, քան երբևիցէ նրա պատմության մեջ, ծառացած է բլոկադայի վտանգը:

Ճիշտ է, Մեծ-Բրիտանիան ինքը նույն-

պես չափազանց խիստ բնույթ է կրում Գերմանիայի ու նրա դաշնակիցների նկատմամբ, ինչպես նաև այն բոլոր երկրների, որոնք այս կամ այն ձևով գտնվում են գերմանական վերահսկողության տակ: Այս իմաստով, բրիտանական նավատորմը հազիվ թե գլխավոր զենքը չէ, որի օգնությամբ բրիտանական հրամանատարությունը ձգտում է կործանիչ հարվածներ հասցնել իր հակառակորդին: Պատերազմի սկզբից հենց, Գերմանիան կտրվեց անդրօվկիանոսյան ու անդրծովային երկրների հետ հաղորդակցություն ունենալուց: Սակայն նա հնարավորություն ունի հաղորդակցություն պահպանելու մի շարք երկրների հետ: Բացի դրանից, չպետք է մոռանալ, որ Գերմանիան իր նվաճած երկրներն օգտագործում է իբրև հումքի և պարենամթերքի աղբյուր: Այսպիսով, պայքարի տվյալ էտապում չափազանց դժվար է որոշել, թե ո՞ւմ բլոկադան է ավելի էֆեկտիվ:

Այսպիսին է Բրիտանական կղզիների մերձակա՝ կարևորագույն ծովային ռազմաբեմերում իրադրության լիակատար փոփոխման հետևանքը:



# ԱՄԵՐԻԿՅԱՆ ՕԳՆՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՆՐԱ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

Գերմանական պաշտոնական տվյալներով, բրիտանական նավագնացության կորուստները 1939 թվի սեպտեմբերից սկսած մինչև 1941 թ. փետրվարի վերջերը կազմել են առնվազն 9·199·200 տոննա: «Բեռլիներ բերզենցայտունգ»-ի հաղորդագրությամբ, մինչև մարտի վերջերը բրիտանական առևտրական նավատորմի կորուստները հասան 10 միլիոն տոննայի:

Բրիտանական աղբյուրները ժխտում են այս թվերի ճշտությունը: «Ռեգիստր Լըլոյդ»-ի տվյալներով, Մեծ-Բրիտանիայի և նրա դաշնակիցների նավագնացության կրած կորուստները շատ ավելի պակաս են, այսինքն 1245 նավ՝ 4·962·257 տոննա ընդհանուր ջրածավալով: Հնարավոր է, որ Մեծ-Բրիտանիայի և նրա դաշնակիցների կորուստների վերաբերյալ գերմանական տվյալները մի փոքր չափազանցեցված են, քանի որ դրանք հիմնվում են սուզանավերի ու ինքնաթիռների հրամանատարների զեկուցագրերի վրա, իսկ հրամանատարները մարտական իրադրության մեջ, ի հարկե, ի վիճակի չեն նույնիսկ ճշտությամբ հաշվելու ջրասույզ արված բոլոր

նավերը, ինչպես որ այդ բանը կարելի է անել, ասենք, ծովային գերատեսչության գրասենյակի հանդիստ պայմաններում: Ջրասույզ արված նավերի թվի մեջ կարող են մտցված լինել նաև վնասված նավերը, որոնք թեև վնասված, բայց կարողացել են հասնել իրենց նավահանգիստները: Սակայն կասկածից վեր է, որ «Ռեգիստր Լլոյդ»-ի տվյալներն էլ նվազեցված են և չեն տալիս Մեծ-Բրիտանիայի ու նրա դաշնակիցների առևտրական նավատորմի կրած կորուստների իսկական պատկերը:

Սակայն, զարգացման հիմնական տենդենցը պարզ պատկերացնելու համար, կարելի է հիմք ընդունել նույնիսկ «Ռեգիստր Լլոյդ»-ի տվյալները: Հաշվենք, որ Մեծ-Բրիտանիայի և նրա դաշնակիցների իսկական կորուստները պատերազմի առաջին 18 ամսվա ընթացքում չեն գերազանցում 5 միլիոն տոննայից: Ինչպիսի՞ համալրում է ստացել բրիտանական առևտրական նավատորմն այդ ժամանակվա ընթացքում: Նույն «Ռեգիստր Լլոյդ»-ի տվյալներով, 1940 թվականին բրիտանական նավաշինարաններում կառուցվել են նավեր 800.000 տոննա ընդհանուր ջրածավալով, կամ թե յուրաքանչյուր ամիս մի-



ջին հաշվով՝ 70.000 տոննա: Ընթացիկ տարվա առաջին երեք ամսում շարք են մտել մի քանի տասնյակ շոգենավ, ոչ պակաս 210—220 հազար տոննա ընդհանուր ջրածավալով:

Եթե տոննաժի վերարտադրության տվյալները համեմատենք կորուստների տվյալների հետ, ապա պատկերը պարզ կլինի: Քանի որ բրիտանական առևտրական նավատորմը կորցնում է միջին հաշվով շաբաթական առնվազն 90.000 տոննա, իսկ աճը կազմում է միջին հաշվով շաբաթական 17.000 տոննայից ոչ ավելի, ապա դժվար չէ հետևություն անել, որ մի որոշ ժամանակից հետո Մեծ-Բրիտանիան կարող է մնալ առանց առևտրական նավատորմի, դրանից բխող բոլոր հետևանքներով: Այս հանգամանքն է՛լ ավելի պարզ կլինի, եթե մենք համեմատենք տոննաժի կորստի և վերարտադրության տվյալները պատերազմի առաջին 18 ամսում. այդ ժամանակամիջոցում կառուցվել է 1.020 հազար տոննա, ջրասույզ է արվել 5 միլիոն տոննա. կորուստը հավասար է 3.380 հազար տոննայի:

Ի՞նչպես են անդրադառնում այս կո-

րուստները բրիտանական առևտրական նավատորմի վրա։

Պատերազմի սկզբում Մեծ Բրիտանիայի առևտրական նավատորմն ուներ 8977 նավ՝ 21 միլիոն տոննա ընդհանուր ջրածավալով։ Բայց այդ թվի մեջ մտցված են բոլոր նավերը, սկսած 100 տոննայից և բարձր։ Ծովային նավարկության տոննաժն զգալիորեն ավելի պակաս է։ 1939 թ. հունիսի 30-ի տվյալներով, բրիտանական առևտրական նավատորմը ծովային նավարկության նավեր ուներ 10·740 հազար տոննա ընդհանուր ջրածավալով։ Դրան պետք է ավելացնել առնվազն 6707 հազար տոննա ծովային նավարկության այն նավերը, որոնք բրիտանական վերահսկողության տակ էին անցել նորվեգիական, բելգիական, հոլանդական, լեհական, հունական և ֆրանսիական ընկերություններից, ինչպես նաև գերմանական ու իտալական այն նավերը, որոնք խլվել էին պատերազմ հայտարարվելուց հետո, վերջապես ԱՄՆ-ում գնված և սեփական նավաշինարաններում կառուցված նավերը։ Հետևապես, եթե բրիտանական առևտրական նավատորմն ամբողջ պատերազմի ընթացքում չկրեր որևէ կորուստ, ապա ծովային



նավարկության նավերի ջրածավալը կկազմեր առնվազն 17·707 հազար տոննա (առ 1-ն հունվարի 1941 թ.)։ Բայց իրականում պատկերն այնքան էլ բարենպաստ չէ։

17·707 հազար տոննա ծովային նավարկության տոննաժից 5 միլիոնը հանգչում է ծովի հատակին։ Մնում է 12·707 հազար տոննա։ Եթե այս տարվա ընթացքում կորուստները չավելանային, այլ մնային միևնույն մակարդակի վրա, ապա առ 1-ն հունվարի 1942 թ. բրիտանական ծովային նավարկության նավատորմի ընդհանուր ջրածավալը հավասար կլիներ 7—8 միլիոն տոննայի, մոտավորապես մեկ միլիոն տոննա ջրածավալով նոր նավեր էլ կկառուցվեին, հետևապես տոննաժը կլիներ ընդամենը 8—9 միլիոն։ Մինչդեռ պայքարի ընթացքը ցույց է տալիս, որ բնավ էլ բացառված չէ կորուստների աճումը, բրիտանական կոմունիկացիաների վրա գերմանացիների կողմից կատարվող գրոհներն ուժեղանալուն համեմատ։ Բայց նույնիսկ կորուստների և վերարտադրության կայունացման դեպքում էլ, բրիտանական ծովային առևտրական նավատորմը տարվա վերջին կունենար միայն

կրիտիկական տոննաժ, որքանով որ 8—9 միլիոն տոննան բավական չէ Մեծ-Բրիտանիայի նորմալ մատակարարման և այն առճող պահանջները (զորքի, հանդերձանքի, ռազմամթերքի, պարենի փոխադրում և այլն) բավարարելու համար, որ ռազմական գերատեսչությունը ներկայացնում է առևտրական նավատորմին:

Վերևում բերված տվյալները հնարավորություն են տալիս պարզ պատկերացում կազմելու, թե Մեծ-Բրիտանիայի համար ինչպիսի նշանակություն ունի Ամերիկայի Միացյալ Նահանգների օգնությունը: Ինչո՞վ է արտահայտվում այդ օգնությունը:

Նախ՝ նրանով, որ բրիտանական ռազմա-ծովային ուժերը, որոնք կռվում են գերմանական սուզանավերի ու ռեյդերների դեմ, կարող են զգալի համալրում ստանալ ԱՄՆ-ից: Ինչպես հայտնի է, արդեն անցյալ տարվա սեպտեմբերին Մեծ-Բրիտանիան ԱՄՆ-ից ստացավ 50 էսկադրային ականակիր, փոխարենը տալով 8 բազաներ Վեստ-Ինդիայում, որոնք կապալով հանձնվեցին ԱՄՆ-ին: Ամերիկյան նավաշինարանները Մեծ-Բրիտանիայի համար կառուցում են տանկեր, իսկ վույն



և հարյուրավոր նավեր, որոնք նախատեսված են գերմանական բլոկադային ուժերի դեմ պայքարելու համար:

Երկրորդ՝ ամերիկյան ավիացիոն արդյունաբերությունը բրիտանական ավիացիային մատակարարում է գործողության հեռավոր շառավիղ ունեցող ռմբակոծիչներ ու կործանիչներ, բրիտանական ծովային կոմունիկացիաներում գործող գերմանական ռմբակոծիչների դեմ պայքարելու համար:

Երրորդ՝ ամերիկյան առևտրական նավատորմն ավելի ու ավելի մեծ մասնակցություն է ունենում Բրիտանական կայսրության առանձին մասերի, ինչպես նաև ամբողջ Բրիտանական կայսրության և Միացյալ Նահանգների ու Հարավային Ամերիկայի պետությունների միջև հաղորդակցություն պահպանելու գործում, դրանով իսկ բրիտանական տոննաժի մի ըզգալի մասն ազատելով ԱՄՆ-ից Մեծ-Բրիտանիա և զանազան ռազմաճակատները ռազմական բեռներ փոխադրելու համար:

Չորրորդ՝ ամերիկյան նավաշինարանները, որոնց արտադրական կարողությունը բրիտանական նավաշինարանների արտադրական կարողությունից ոչ թե պակաս,

այլ ավելի բարձր է, ձեռնամուխ են եղել արագացված տեմպերով ու արագընթաց մեթոդներով առևտրական նավերի կառուցմանը՝ Մեծ-Բրիտանիայի համար: Նավերի հիմնական մասերը պատրաստվում են գործարաններում և ապա հավաքվում են նավաշինարաններում, որն զգալիորեն արագացնում է առևտրական տոննաժի արտադրությունը:

Հինգերորդ՝ բրիտանական ծովային գերատեսչությունը հուսով է, որ ամենամոտիկ ժամանակներս ամերիկյան ծովային և օդային ուժերը կսկսեն մասնակցել կոմունիկացիոն գծերի պաշտպանությանը գերմանական սուզանավերից, ինչպես նաև գերմանական վերջրյա նավերից ու ռմբակոծիչ ինքնաթիռներից:

Թե որքան հիմնավոր են այդ հույսերը, կարելի է դատել ապրիլի 26-ին Վաշինգտոնում մամուլի ներկայացուցիչների առաջև ԱՄՆ-ի պրեզիդենտ Ռուզվելտի արած հայտարարությունից: Պրեզիդենտը հայտարարեց, որ ամերիկյան այն ռազմանավերը, որոնք պահակային ծառայություն են կրում Ատլանտյան օվկիանոսում, հրաման են ստացել ընդարձակելու իրենց հսկողության գոտին: Ինչպես հայտնի է, Հավան-



նայում տեղի ունեցած պան-ամերիկյան կոնֆերանսը 1939 թ. սեպտեմբերին որոշում ընդունեց ամերիկյան մայր ցամաքի երկարությամբ 300 մղոնանոց չեզոք գոտի սահմանելու մասին, մի գոտի, որի սահմաններում պետք է պահակային ծառայություն կրեին ամերիկյան երկրների ռազմանավերը: Ներկայումս ամերիկյան ռազմանավերը պահպանում են Ատլանտիկան այդ գոտու սահմաններից. շատ հեռու, «ԱՄՆ-ի ծովափի կենտրոնական մասից»,— ինչպես ասաց Ռուզվելտը,— 1850 կիլոմետր (1000 մղոն) հեռավորության վրա: Այդ գոտում ամերիկյան ռազմանավերն ու հավանորեն նաև ինքնաթիռները, որոնց բազաները գտնվում են Վեստ-Ինդիայում և Արևմտյան Ատլանտիկայում, Անգլիայից վերջերս ստացված կղզիներում պետք է հսկողություն ունենան գերմանական նավերի ու ինքնաթիռների նկատմամբ և նրանց մասին հաղորդեն բրիտանական համապատասխան ինստանցիաներին:

Ռուզվելտը հրաժարվեց հաղորդել, թե ամերիկյան պահակային նավերն ինչպես կգործեն այն դեպքում, եթե նրանք վկա հանդիսանան բրիտանական փոխադրանավերի վրա գերմանական նավերի կամ ինք-

նաթինների հարձակմանը: Այնուամենայնիվ, հաշվի առնելով իրադարձությունների ընթացքը, ակնբախ է, որ պրեզիդենտի հայտարարությունը միայն առաջին քայլն է Ատլանտիկայում ամերիկյան ռազմածովային ու օդային ուժերի ավելի լայն ձեռնարկումների ուղղությամբ:

Ամերիկյան պահակային վերահսկողության գոտու ընդարձակումը մի նոր գործոն է, որը հաշվի են առնում ատլանտյան կոմունիկացիաներում կռվող երկու կողմերն էլ:

Ամերիկյան օդային և ծովային բազաների ստեղծումը Գրենլանդիայում, այս տեսակետից արժանի է շատ մեծ ուշադրության: Պետք է հաշվի առնել, որ հենց ճիշտ հյուսիսում է, որ Հյուսիսային Ամերիկայից Մեծ-Բրիտանիա (Իսլանդիայի միջոցով) տանող ծովային ուղիներն ամենից ավելի հեռու են Ֆրանսիայի ափերին գտնվող գերմանական բլոկադային ուժերի հիմնական բազաներից: Այդ կոմունիկացիաների փոխադրումն ավելի ու ավելի հյուսիս, նաև կրճատում է տարածությունը ռազմական բեռներով ԱՄՆ-ից Մեծ-Բրիտանիա ուղևորվող փոխադրանավերի առաքման ու ժամանման կետերի միջև:



Գրենլանդիայում բազաներ կառուցելուց հետո, ամերիկյան ռմբակոծիչները կարելի է օդով Մեծ-Բրիտանիա փոխադրել Գրենլանդիայի և Իսլանդիայի միջոցով:

ԱՄՆ-ի աճող մասնակցությունն Ատլանտյան օվկիանոսի կոմունիկացիաների համար մղվող պայքարում, ուղղակի կապակցության մեջ է գտնվում Ռուզվելտի ամբողջ քաղաքականության հետ: Եթե ամերիկյան կառավարությունը սահմանափակվեր միայն Մեծ-Բրիտանիայի համար ռազմական հանդերձանք արտադրելով, ապա ռուզվելտյան բոլոր պլանները չէին հասնի իրենց նպատակին: Որպեսզի այդ պլանները դառնային ռեալ, անհրաժեշտ եղավ կոմունիկացիաներում ստեղծել այնպիսի իրադրություն, որի ժամանակ ամերիկյան մատակարարումը կարողանար փաստորեն հասցվել Անգլիա: Այլ խոսքով, ամերիկյան օգնությունը, որն անտարակույս չափազանց ուժեղ ազդեցություն ունի Ատլանտիկայում մղվող կռվի ընթացքի վրա, միայն այն դեպքում կխաղա իրոք վճռական դեր, եթե այդ օգնությունը փաստորեն հնարավոր լինի ցույց տալ:

Ահա թե ինչու բրիտանական առևտրական նավատորմի կորուստների աճմանը և

բրիտանական կղզիների նկատմամբ գերմանական բլոկադայի ավելի ու ավելի ուժեղացմանը զուգընթաց, Ամերիկայի Միացյալ Նահանգներում ավելի ու ավելի պարզ են խոսում, որ անհրաժեշտ է ամերիկյան առևտրական նավատորմի մասնակցությունը Մեծ–Բրիտանիայի մատակարարման գործում և ռազմական նավատորմի մասնակցությունը՝ Ատլանտիկայի ծովային ուղիներն ապահովելու գործում:

Այսպիսով մենք տեսնում ենք, որ անգլո–ամերիկյան համագործակցությունը դուրս է եկել սովորական առևտրական հարաբերությունների շրջանակներից: Ատլանտիկայում մղվող կռիվն իր օրբիտայի մեջ է գրավում նաև ԱՄՆ–ին: Սկսվում է և՛ ավելի լարված մրցակցություն երկու բանակների նավաշինական արդյունաբերության միջև, քան թե առաջին համաշխարհային պատերազմի տարիներին: Այդ մրցակցությանը մասնակցում են մեկ կողմից՝ Գերմանիան ու Իտալիան, որոնք ավելացնում են սուզանավերի և այլ ռազմանավերի արտադրությունը կոմունիկացիաներում պայքարելու համար, և որոնք հնարավորություն ունեն այդ նպատակով օգտագործել նվաճված երկրների ամբողջ



նավաշինարանները: Մյուս կողմից՝ այդ մրցակցությանը մասնակցում են Մեծ Բրիտանիան ու Ամերիկայի Միացյալ Նահանգները, որոնք արագությամբ զարգացնում են իրենց նավաշինությունը, ձգտելով վերջինս ուժեղացնել այն աստիճան, որ վերարտադրվող տոննաժը լինի կորցրածից շատ ավելի բարձր:

Առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ այդ մրցակցության մեջ վերջ ի վերջո հաղթեցին դաշնակիցները: Նրանք 1918 թվին կորցրին 2·744 հազար տոննա ընդհանուր ջրածավալով առևտրական նավեր, բայց կառուցեցին 3·940 հազար տոննա: Մինչդեռ գերմանական ստորջրյա նավատորմի աճը 1918 թվականին հավասար էր 0–ի (կառուցվել էր 81 սուզանավ և նույնքան էլ խորտակվել էր):

Սակայն ներկայիս պատերազմի առանձնահատկությունն այն է, որ կոմունիկացիաների պրոբլեմը չի լուծվում միայն առևտրական տոննաժի վերարտադրությամբ: Այդ կոմունիկացիաների ապահովման ամենից ավելի կարևոր միջոցը, անգլիական ծովային հրամանատարության կարծիքով, հակատորպեդ բլոկադային ուժերի հենակետային բազաների և դրանց

համայրման աղբյուրների ավերումն է:

Դրանով է բացատրվում այն հանգամանքը, որ վերջին ժամանակներս բրիտանական ավիացիայի ամենաուժեղ հարվածները, ավիացիա, որը համալրվում է ամերիկյան ծանր ռմբակոծիչներով, ուղղված են Քիլի, Բրեմենի, Համբուրգի և գերմանական այլ խոշոր նավաշինական ու ինքնաթիռաշինական կենտրոնների դեմ:

Ատլանտիկայում մղվող պայքարն ամբողջ պատերազմի ամենակարևոր ընդհանուր պրոբլեմներից մեկն է: Դրանումն էլ հենց կայանում է Ատլանտիկայում մղվող կռվի նշանակությունը:

Ի տ. պատասխանատու խմբագրի՝

Խ. Ս. ԻՍԿԱՆԴԱՐՅԱՆ

Վ.Ց 6011. Պատվեր՝ № 570. տիրաժ՝ 10.000

Ստորագրված է տպագրության 11/VI 1941 թ. Տպագրական 2 մամուլ, մեկ մամուլում 40.000 տառանիշ:

Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետին կից թերթերի և ամսագրերի տպարան, Երևան

